Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

32-ԱՀ




(8)

№ 9 ԱՊՐԻԼ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





---

# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՑՈՐԵՆԻ, ՏԱՐԵԿԱՆԻ, ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻ, ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂԻ ԵՎ ԲԱՄԲԱԿԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ ՍՏԱՆԱԼՈՒ ՀԱՄԱՐ ԿՈԼԽՈԶՆԻԿՆԵՐԻՆ, ՄՏԿ-ՆԵՐԻ ԵՎ ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍԻ ԿՈՉՈՒՄ ՇՆՈՐՀԵԼՈՒ ԵՎ ՍՍՌՄ ՇՔԱՆՇԱՆՆԵՐՈՎ ՈՒ ՄԵԴԱԼՆԵՐՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Հաշվի առնելով, որ բերքի բարձրացումը կարևորագույն խնդիր է գյուղատնտեսության վերականգնման ու վերելքի գործում և կոլխոզնիկներին, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողներին ցորենի, տարեկանի, եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի և բամբակի բարձր բերք ստանալու համար խրախուսելու նպատակով ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահությունը որոշում է.*

*1. Սահմանել, որ կոլխոզների ու սովխոզ-*

ների դաշտավարական բրիգադաների բրիգադիրներին և օղակավարներին, կոլխոզների նախագահներին, սովխոզների բաժանմունքների կառավարիչներին, դիրեկտորներին, ավագ ագրոնոմներին և ավագ մեխանիկներին շնորհվում է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, կամ նրանք պարգևատրվում են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով հետևյալ չափով բերք ստանալու համար.

ա) Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում է շնորհվում անջրդի հողերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 30 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 70 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից առնվազն 600 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 800 ցենտներ շաքարի ճակնդեղ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 85 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 60 ցենտներ փաստացի բերք ստանալու համար։

բ) Լենինի շքանշանով պարգևատրվում են անջրդի հողերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 25 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 60 ցենտ-



ներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 500 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 700 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 70 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 50 ցենտներ փաստացի բերք ստանալու համար։

գ) Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով պարգևատրվում են անջրդի հողերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 20 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 50 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 400 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 600 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 60 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 40 ցենտներ փաստացի բերք ստանալու համար։

դ) «Աշխատանքային արիության համար» և «Աշխատանքային գերազանցության համար» մեդալներով պարգևատրվում են անջրդի հողերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 18 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 40 ցենտներ, անջրդի շրջաններում շաքարի

ճակնդեղի առնվազն 300 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 400 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 40 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 25 ցենտներ փաստացի բերք ստանալու համար։

Առանձնապես աչքի ընկած կոլխոզնիկներին և սովխոզների աշխատողներին պարգևատրել Լենինի, Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշաններով և «Աշխատանքային արիության համար» ու «Աշխատանքային գերազանցության համար» մեդալներով, նայած նրանց մասնակցությանը բարձր բերքի հասնելու գործին։

2. Կոլխոզների ու սովխոզների դաշտավարական բրիգադաների բրիգադիրներին և օղակավարներին, կոլխոզների նախագահներին, սովխոզների բաժանմունքների կառավարիչներին, դիրեկտորներին, ավագ ագրոնոմներին և ավագ մեխանիկներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհել և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրել հետևյալ պայմանները պարտադիր կերպով կատարելու դեպքում.

ա) երբ սույն Հրամանագրի առաջին հոդ-



վածով սահմանված բերքը ստացվել է առնվազն հետևյալ տարածությունից.

ցորեն կամ տարեկան՝ 8 հեկտարից, եգիպտացորեն՝ 3 հեկտարից, շաքարի ճակընդեղ 2 հեկտարից և բամբակ՝ 3 հեկտարից— կոլխոզների և սովխոզների դաշտավարական բրիգադաների օղակավարների համար.

ցորեն կամ տարեկան՝ 17 հեկտարից, եգիպտացորեն՝ 6 հեկտարից, շաքարի ճակընդեղ՝ 4 հեկտարից և բամբակ՝ 5 հեկտարից— կոլխոզների և սովխոզների դաշտավարական բրիգադաների բրիգադիրների համար.

ցորեն կամ տարեկան՝ 40 հեկտարից, եգիպտացորեն՝ 15 հեկտարից, շաքարի ճակընդեղ՝ 8 հեկտարից և բամբակ՝ 10 հեկտարից— կոլխոզների նախագահների և սովխոզների բաժանմունքների կառավարիչների համար.

ցորեն կամ տարեկան՝ 80 հեկտարից, եգիպտացորեն՝ 30 հեկտարից, շաքարի ճակընդեղ՝ 20 հեկտարից և բամբակ՝ 20 հեկտարից— սովխոզների դիրեկտորների, ավագ ագրոնոմների և ավագ մեխանիկների համար։

բ) երբ օղակը, բրիգադան, կոլխոզը, սով-

*խոզը կամ նրա բաժանմունքը ստանում է ցորենի, տարեկանի, եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, բամբակի պլանային բերք համապատասխան կուլտուրայի մնացած ցանքատարածությունից, ելնելով պետական պլանով սահմանված տարածության հաշվից, և երբ ստանում են պլանային չափով բերք թվարկված բոլոր կուլտուրաներից ամբողջ կոլխոզում կամ սովխոզում, ինչպես նաև, երբ կոլխոզը կատարում է պարտադիր հանձնումներն ու ՄՏԿ-ի աշխատանքի հատուցումը բնավարձով, իսկ սովխոզը կատարում է պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու պլանը։*

*3. Սահմանել, որ ՄՏԿ-ների դիրեկտորներին, ավագ ագրոնոմներին, ավագ մեխանիկներին և տրակտորային բրիգադաների բրիգադիրներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում է շնորհվում կամ նրանք պարգևատրվում են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով իրենց կողմից սպասարկվող կոլխոզներում հետևյալ չափով բերք ստանալու համար.*

*ա) Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհվում է.*

*դիրեկտորներին, ավագ ագրոնոմներին և*



*ավագ մեխանիկներին անջրդի հողերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 20 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 40 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազըն 275 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 375 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 50 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 35 ցենտներ փաստացի բերք ըստանալու համար.*

*տրակտորային բրիգադաների բրիգադիրներին՝ անջրդի հողերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 22 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 50 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 300 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 400 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 55 ցենտներ ու հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 40 ցենտներ փաստացի բերք ստանալու համար.*

*բ) Լենինի շքանշանով պարգևատրվում են՝*

*դիրեկտորները, ավագ ագրոնոմները և ավագ մեխանիկները անջրդի հո-*

ղերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 18 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 35 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 240 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 325 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 40 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 25 ցենտներ փաստացի բերք ստանալու համար.

տրակտորային բրիգադների բրիգադիրները՝ անջրդի հողերում հեկտարից ցորենի ու տարեկանի առնվազն 20 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 40 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 260 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից առնվազն 350 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 45 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 30 ցենտներ փաստացի բերք ստանալու համար.

գ) Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով պարգևատրվում են՝

դիրեկտորները, ավագ ագրոնոմները և ավագ մեխանիկները անջրդի հողերում հեկ-



տարից ցորենի և տարեկանի առնվազն 17 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 30 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 220 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 275 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 30 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 18 ցենտներ փաստացի բերք ստանալու համար.

տրակտորային բրիգադների բրիգադիրները՝ անջրդի հողերում հեկտարից ցորենի ու տարեկանի առնվազն 19 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 35 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 230 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 300 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 35 ցենտներ ու հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 20 ցենտներ փաստացի բերք ստանալու համար.

դ) «Աշխատանքային արիության համար» և «Աշխատանքային գերազանցության համար» մեդալներով պարգևատրվում են՝

դիրեկտորները, ավագ ագրոնոմները և ա-

վագ մեխանիկները՝ անջրդի հողերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 16 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 25 ցենտներ, անջրդի շըրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 200 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 240 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 25 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 15 ցենտներ փաստացի բերք ստանալու համար.

տրակտորային բրիգադաների բրիգադիրները՝ անջրդի հողերում հեկտարից ցորենի և տարեկանի առնվազն 17 ցենտներ, հեկտարից եգիպտացորենի հատիկի առնվազն 30 ցենտներ, անջրդի շրջաններում հեկտարից շաքարի ճակնդեղի առնվազն 210 ցենտներ և ջրովի շրջաններում հեկտարից 250 ցենտներ, հեկտարից բամբակի ամերիկյան սորտերի առնվազն 30 ցենտներ և հեկտարից եգիպտական սորտերի առնվազն 17 ցենտներ փաստացի բերք ստանալու համար։

ՄՏԿ-ների առանձնապես աչքի ընկած տրակտորիստներին և աշխատողներին պարգևատրել Լենինի, Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշաններով և «Աշխատանքային



արիության համար» ու «Աշխատանքային գերազանցության համար» մեդալներով, նայած նրանց մասնակցությանը բարձր բերքի հասնելու գործին։

4. ՄՏԿ-ների դիրեկտորներին, ավագ ագրոնոմներին, ավագ մեխանիկներին և տրակտորային բրիգադաների բրիգադիրներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհել և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրել հետևյալ պայմանները պարտադիր կերպով կատարելու դեպքում.

ա) երբ սույն Հրամանագրի երրորդ հոդվածով սահմանված բերքը ստացվել է հետևյալ տարածությունից.

ցորեն կամ տարեկան՝ 600 հեկտարից, եգիպտացորեն՝ 300 հեկտարից, շաքարի ճակնդեղ՝ 250 հեկտարից և բամբակ՝ 250 հեկտարից—դիրեկտորների, ավագ ագրոնոմների և ավագ մեխանիկների համար.

ցորեն կամ տարեկան՝ 150 հեկտարից, եգիպտացորեն՝ 80 հեկտարից, շաքարի ճակնդեղ՝ 60 հեկտարից և բամբակ՝ 60 հեկտարից—տրակտորային բրիգադաների բրիգադիրների համար.

բ) երբ սպասարկվող կոլխոզներում ստացվում է ցորենի, տարեկանի, եգիպտացորենի,

շաքարի ճակնդեղի, բամբակի պլանային բերք համապատասխան կուլտուրայի մնացած ցանքատարածությունից և թվարկված բոլոր կուլտուրաների պլանային չափով բերք տրակտորային բրիգադայի կամ ՄՏԿ-ի կողմից սպասարկվող կոլխոզներում, ինչպես նաև, երբ կոլխոզները կատարել են ՄՏԿ-ի աշխատանքի համար պետությանը բնավարձ հանձնելու պլանը։

5. Սահմանել, որ աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների գործադիր կոմիտեների նախագահներին, ՀամԿ(բ)Պ շրջանային կոմիտեների քարտուղարներին, գյուղատնտեսության շրջանային բաժինների վարիչներին և այդ բաժինների գլխավոր ագրոնոմներին, որոնք իրենց աշխատանքով ապահովել են ամբողջ շրջանում ցորենի, տարեկանի, եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի և բամբակի պլանային բերքահավաքի գերակատարումը առնվազն 20 տոկոսով, շնորհվում է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում. բերքահավաքի պլանային առաջադրանքները առնվազն 15 տոկոսով գերակատարվելու դեպքում, վերոհիշյալ աշխատողները պարգևատրվում են Լենինի շքանշանով, իսկ առնվազն 10 տոկոսով



գերակատարվելու դեպքում պարգևատրվում են Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։

Աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների գործադիր կոմիտեների, ՀամԿ(բ)Պ շրջանային կոմիտեների և գյուղատնտեսության շրջանային բաժինների առանձնապես աչքի ընկած աշխատողները պարգևատրվում են ՍՍՌՄ շքանշաններով և մեդալներով, նայած նրանց մասնակցությանը շրջանի կոլխոզներում և սովխոզներում բարձր բերք ստանալու գործի կազմակերպմանը։

6. Աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների գործադիր կոմիտեների, ՀամԿ(բ)Պ շրջանային կոմիտեների և գյուղատնտեսության շրջանային բաժինների աշխատողներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհել և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրել հետևյալ պայմանները պարտադիր կերպով կատարելու դեպքում.

ա) երբ ամբողջ շրջանում գյուղատնտեսական արտադրանքի բոլոր տեսակներով կատարված են պարտադիր հանձնումները և

ՄՏԿ-ի աշխատանքի համար բնավարձի վճարումը.

բ) երբ կատարվել է արտադրության պլանը տվյալ շրջանի համար հիմնական գյուղատնտեսական ճյուղի կամ գյուղատնտեսական կուլտուրաների գծով։

7. Սահմանել, որ սույն Հրամանագրով նախատեսված բերքատվության և ցանքատարածության չափի այն ցուցանիշները, որոնց համար շնորհվում է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում և պարգևատրում ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով, գործում են 1947 թվի համար և հետագայում ամեն տարի սահմանվում են ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումներով։

8. Սահմանել, որ սույն Հրամանագրի համապատասխան Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու համար առաջադրումը կատարում են ըստ կոլխոզների և ՄՏԿ-ների՝ ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությունը, իսկ ըստ սովխոզների՝ ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությունը, աշխատավորների դեպուտատների մարզային և երկրա-



մասային Սովետների գործադիր կոմիտեների նյութերի հիման վրա, ստուգված միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետներին կից Բերքատվության որոշող պետական տեսուչների կողմից, յուրաքանչյուր գյուղատնտեսական տարվա արդյունքների համաձայն։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝ Ն. ՇՎԵՐՆԻԿ
ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար՝ Ա. ԳՈՐԿԻՆ

*Մոսկվա, Կրեմլ*
*29 մարտի 1947 թ.*

# ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումը «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» իր պատմական որոշման մեջ իբրև կարևորագույն խնդիր դրեց գյուղատնտեսության այնպիսի վերելքի ապահովումը, որը հնարավորություն տա ամենակարճ ժամանակամիջոցում ստեղծել պարենամթերքի առատություն մեր բնակչության համար և հումքի առատություն՝ թեթև արդյունաբերության համար։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի պատմական որոշումն իրականացնելու գործում առաջնահերթ խնդիր է այս տարվա գարնանային դաշտային աշխատանքների հաջող անցկացումը ագրոտեխնիկական բարձր ցուցանիշներով և սեղմ ժամկետներում։ 1947 թվականի գարնանացանը կարևորագույն էտապ է բարձր բերքի համար



մղվող պայքարում։ Ներկայումս մեր կոլխոզային գյուղի համար չկա ավելի կարևոր և պատասխանատու խնդիր, քան գարնանային դաշտային աշխատանքների օրինակելի անցկացումը։

Գյուղի բոլոր աշխատողների, ագիտատորների և պրոպագանդիստների մարտական խնդիրն է՝ օր առաջ պարզաբանել կոլխոզնիկներին, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողներին, որ ապագա բերքի բախտը վճռվում է հենց այժմ, գարնան շրջանում։ Անհրաժեշտ է խորը կերպով բացատրել նրանց ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումը «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին»։ Այդ որոշումը, որը մեր երկրի գյուղատնտեսության հետագա ամրապնդման և հուժկու զարգացման ծավալուն ու մարտական ծրագիր է, պետք է հասցվի յուրաքանչյուր կոլխոզնիկի, ՄՏԿ-ների ու սովխոզների յուրաքանչյուր աշխատողի գիտակցությանը։ Պետք է պարզաբանել գյուղի աշխատավորներին, որ գարնանային դաշտային աշխատանքների հաջող անցկացումը առաջին էտապն է ՀամԿ(բ)Պ

կենտկոմի պլենումի որոշումը կենսագործելու ճանապարհին։

Պարզաբանելով ՀամԿ(բ)Պ կենտկոմի պլենումի որոշումից բխող ձեռնարկումների համապետական նշանակությունը, ագիտատորները և պրոպագանդիստները պետք է այդ կապակցեն տվյալ կոլխոզի, սովխոզի, ՄՏ կայանի պրակտիկ խնդիրների հետ։

Մեր ամբողջ երկրում ներկայումս լայնորեն ծավալվել է հայրենասիրական մեծ շարժում՝ տարեկան արտադրական պլանները ժամկետից շուտ, մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձը կատարելու և գերակատարելու համար։ Գարնանացանն արագ և հաջող անցկացնելու համար մղվող պայքարում, բանվոր դասակարգի օրինակին հետևելով, նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ է մտել նաև կոլխոզային գյուղացիությունը։

Սոցիալիստական մրցությունը հետ մնացող տնտեսությունների առաջավորների մակարդակին հասցնելու և դրա հիման վրա մեր երկրի ամբողջ գյուղատնտեսության ընդհանուր վերելքի հասնելու մի զորեղ միջոց է։ Ուստի պետք է սոցիալիստական



մրցության մեջ ներգրավել կոլխոզնիկների, ՄՏԿ-ների և սովխոզների աշխատողների լայն մասսաներին, գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, պարզաբանել նրանց մրցության նշանակությունն ու նպատակը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոլխոզ, ՄՏ կայան և սովխոզ կատարի իր ստանձնած պարտավորությունները։

Գարնանային դաշտային աշխատանքների ընթացքում ագիտատորներն ու պրոպագանդիստները պետք է մրցողների ուշադրությունը հրավիրեն դաշտային աշխատանքները բարձրորակ կատարելու, վառելիքի խնայողության և այլ հարցերի վրա։

Որպեսզի սոցիալիստական մրցությունը լավագույն արդյունքներ տա, անհրաժեշտ է լայնորեն մասսայականացնել մրցության մեջ առաջավորների փորձը, նրանց ցուցանիշները, աշխատանքի մեթոդները, դրանք դարձնելով յուրաքանչյուր կոլխոզնիկի, ՄՏԿ-ների և սովխոզների յուրաքանչյուր բանվորի, շրջանի ամբողջ աշխատավորության սեփականությունը։ Այդ նպատակով կարող են օգտագործվել ագիտացիոն-մասսայական աշխատանքի այնպիսի ձևեր, ինչպես՝ ագիտատորի զրույցը մրցության արդյունքների

մասին, «Առաջավորների տախտակները», «Պատվո տախտակները», փոխանցիկ կարմիր դրոշների հանձնումը և այլն։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստության շրջանում մեր ամբողջ Ռեսպուբլիկայում լայնորեն ծավալվեց ագիտացիոն-մասսայական աշխատանքը բնակչության մեջ։ Այդ աշխատանքի փորձը ներկայումս ամենուրեք պետք է օգտագործվի գարնանային դաշտային աշխատանքները ժամանակին, խնամքով ու բարձրորակ կատարելու համար։

Մեծ նշանակություն ունի, երբ մասսայական-քաղաքական աշխատանքին անմիջականորեն մասնակցում են պարտիական ու սովետական կազմակերպությունների ղեկավար աշխատողները։ Անհրաժեշտ է, որ նրանք սիստեմատիկաբար կոլխոզնիկների ժողովներում հանդես գան զեկուցումներով ու զրույցներով՝ գյուղատնտեսության նոր վերելք ստեղծելու հարցերի շուրջը։ Գյուղում մասսայական-քաղաքական աշխատանքի մեջ պետք է լայնորեն ներգրավվի նաև գյուղական ինտելիգենցիան։

Գարնանային դաշտային աշխատանքների շրջանում գյուղում կատարվող մասսայա-



կան-քաղաքական աշխատանքի կազմակերպման մեջ մեծ է գյուղական քաղլուսհիմնարկների դերը։ Ակումբներում, գրադարան-ընթերցարաններում և կարմիր անկյուններում պետք է պարբերաբար կազմակերպել ագրոնոմների, զոոտեխնիկների, փորձակայանների աշխատողների զրույցներ ագրոտեխնիկայի կիրառման բնագավառում ձեռք բերված նվաճումների մասին, ինչպես նաև գյուղատնտեսության առաջավորների զրույցները իրենց փորձի մասին։

Կոլխոզնիկների մեջ պետք է լայնորեն մասսայականացնել Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանի առաջավոր փորձը, օգտագործելով «Ագիտատորի բլոկնոտ»-ի հավելվածը և այլ նյութեր։

Գարնանային գյուղատնտեսական աշխատանքների ժամանակաշրջանում գյուղում կատարվող ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնը պետք է փոխադրվի դաշտ, այնտեղ, ուր անմիջականորեն լուծվում է ապագա բերքի բախտը։ Ըստ որում ագիտատորների ուժերը պետք է այնպես դասավորվեն, որ յուրաքանչյուր դաշ-

տավարական ու տրակտորային բրիգադայում լինի մշտական ագիտատոր։

Այս տեսակետից ուշագրավ է պարտիայի Ալավերդու շրջկոմի փորձը։ Այստեղ գարնանային աշխատանքներն սկսվելուց դեռ շատ առաջ վերանայել էին ագիտատորների կազմը, այն լրացրել լավագույն ագիտատորներով, բոլոր բրիգադաներին և օղակներին գարնանային գյուղատնտեսական աշխատանքների ամբողջ ժամանակամիջոցի համար ամրացրել մշտական ագիտատորներ։

Շրջանում անցկացվեցին ագիտկոլեկտիվների ղեկավարների խորհրդակցություն և ագիտատորների ենթաշրջանային խորհրդակցություններ՝ դաշտում մասսայական-քաղաքական աշխատանքը կազմակերպելու հարցերի վերաբերյալ։

Պարտիայի Կիրովականի շրջկոմը անմիջականորեն դաշտում աշխատելու համար առանձնացրել է 331 ագիտատոր, որոնք արդեն մասսայական-բացատրական լայն աշխատանք են ծավալել կոլխոզնիկների մեջ։

Գյուղական ագիտատորների ամբողջ մասսայական-քաղաքական աշխատանքն այժմ պետք է ենթարկված լինի մեկ հիմնական



խնդրի, այն է՝ մոբիլիզացիայի ենթարկել բոլոր կոլխոզնիկներին, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողներին գարնանային գյուղատնտեսական աշխատանքները սեղմ ժամկետներում և բարձրորակ կատարելու համար։

Հարկավոր է գյուղի աշխատավորներին լայնորեն պարզաբանել, որ այդ աշխատանքների հաջող անցկացումից է կախված հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների բարձր բերք ստանալը, որը կապահովի պարտիայի ու կառավարության ձեռնարկումների կենսագործումը ժողովրդի կյանքի նյութական մակարդակը բարձրացնելու և երկրում սպառման հիմնական առարկաների առատություն ստեղծելու ուղղությամբ։

Ուստի կոլխոզնիկների մեջ կատարվող քաղաքական ագիտացիոն-մասսայական աշխատանքը պետք է սերտորեն կապված լինի պարտիայի և կառավարության կողմից ձեռնարկվող տնտեսական ու քաղաքական խընդիրների հետ։ Ագիտատորներն ու պրոպագանդիստները պետք է իրենց յուրաքանչյուր զրույցը կապեն այն պրակտիկ խնդիրների

հետ, որոնք ներկայումս կանգնած են կոլխոզի, բրիգադայի, օղակի առջև։

Կոլխոզնիկների մեջ մասսայական-քաղաքական աշխատանքը կազմակերպելու տեսակետից ուսանելի է Ստեփանավանի շրջանի Կուրթան և Կողես գյուղերի ագիտկոլեկտիվների փորձը։ Այստեղ ագիտացիոն-մասսայական աշխատանքն իրոք կոլխոզնիկներին մոբիլիզացիայի է ենթարկում գարնանային գյուղատնտեսական աշխատանքները հաջող անցկացնելու համար։

Կուրթան գյուղի կոլխոզում, որտեղ ագիտատորների կոլեկտիվը ղեկավարում է ընկ. Տ. Զոհրաբյանը, ագիտատորները պարբերաբար զրույցներ էին անցկացնում կոլխոզնիկների մեջ ագրոտեխնիկայի հարցերի շուրջը։ Հետևանքը եղավ այն, որ կոլխոզը ժամանակին դաշտ փոխադրեց 1.500 տոննա տեղական պարարտանյութ, լավ նախապատրաստվեց գարնանացանին և այժմ արդեն հաջողությամբ ավարտել է այն։ Ագիտատորների նախաձեռնությամբ կոլխոզնիկները 30 հեկտար տարածության



վրա կազմակերպեցին ձյունապահպանության աշխատանքները։

Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղի Ստալինի անվան կոլխոզում ագիտկոլեկտիվը կազմված է 19 ագիտատորներից, որոնք բոլորն էլ ամրացված են բրիգադներին և օղակներին։ Կոլխոզնիկների մեջ սիստեմատիկաբար զրույցներ կազմակերպելու տեսակետից հատկապես աչքի են ընկնում ագիտատորներ Ս. Թամազյանը, Վ. Փափախչյանը և ուրիշներ։ Բրիգադներում և օղակներում կազմակերպված է պատի թերթերի և խլիչովկաների հրատարակումը, որտեղ լուսաբանվում է առաջավորների փորձը դաշտային աշխատանքների ընթացքում։

Աքորի գյուղի Իլյիչի անվան կոլխոզում ագիտատորներ Ա. Ասլանյանի և Վ. Դալաքյանի նախաձեռնությամբ կոլխոզնիկները մտել են սոցիալիստական մրցության մեջ և պարտավորություն են ստանձնել ժամանակին ու բարձրորակ, ագրոտեխնիկական պայմանների պահպանումով կատարել դաշտային աշխատանքները, հասնել հեկտարից 12 ցենտներ հացահատիկային կուլտուրաների բերքի։

Կոլխոզնիկների մեջ կատարվող մասսայա-

*կան-քաղաքական աշխատանքի մի կարևոր օղակն են նաև դասախոսություններն ու զեկուցումները, որոնք պետք է անցկացվեն հետևյալ թեմաների շուրջը.— Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի հիմնական խնդիրները, Գյուղատնտեսական արտելի Ստալինյան կանոնադրությունը կոլխոզային կյանքի հիմնական օրենքն է, Բոլշևիկյան պարտիայի և սովետական պետության հոգատարությունը կոլխոզների և կոլխոզնիկների մասին, Հանրային սեփականությունը կոլխոզային կարգերի հիմքն է, Հասարակական և անձնական շահերի զուգակցումը կոլխոզներում, Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և աշխատանքային կարգապահության ամրապնդումը կոլխոզներում և այլն:*

*Բարձր բերքի համար գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության օրերս հրապարակված Հրամանագիրը մի նոր լուրջ խթան կհանդիսանա գյուղատնտեսական արտադրության*



*վերելքի, կոլխոզնիկների և ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողների աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում: Այդ Հրամանագրի ամենալայն պարզաբանումը ագիտատորների և պրոպագանդիստների հրատապ խնդիրներից մեկը պետք է լինի: Անհրաժեշտ է Հրամանագրում նշված բարձր բերքատվության ցուցանիշները հասցնել յուրաքանչյուր կոլխոզնիկին, ՄՏԿ-ների և սովխոզների բոլոր աշխատողներին, առաջավորների օրինակով ետ մնացողներին առաջ մղելու, գարնանային դաշտային աշխատանքները ժամանակին և բարձր որակով կատարելու համար:*

*Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ*

ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի ագիտացիայի սեկտորի վարիչ

---

Սոցիալիստական մրցությունն ասում է. մեկը աշխատում է վատ, մյուսը լավ, երրորդը ավելի լավ, հասի՛ր լավագույնին և ձեռք բեր ընդհանուր վերելք:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

## ՄԱՏՐՈՍՈՎԻ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ

Լենինի-Ստալինի պարտիայի վեհ գաղափարներով դաստիարակված սովետական մարդիկ լի են ստեղծագործական նախաձեռնություններով։ Նրանք չեն հանգստանում ձեռք բերված նվաճումներով, նրանք նորանոր միջոցներ են գտնում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, Ստալինյան նոր հնգամյակի հոյակապ խնդիրները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։

Արդեն հռչակավոր են դարձել նոր հնգ-



ամյակի այնպիսի ականավոր ստախանովականների անունները, ինչպիսիք են ածխարդյունաբերության մեջ՝ Լուկինչը և Զապորոժեցը, մետալուրգիայի բնագավառում՝ Կուչերինը, տեքստիլ արդյունաբերության մեջ՝ Վոլկովան։ Այս պանծալի անուններին շարունակ ավելանում են նորերը, որոնք իրենց աշխատանքային սխրագործություններով բազմապատկում են մեր հարազատ Հայրենիքի փառքը։

Մոսկվայի «Պարիժսկայա Կոմունա» կոշկեղենի ֆաբրիկայի ձևող բանվոր Վասիլի Մատրոսովը նույնպես իր հրաշալի նախաձեռնությամբ մտավ մեր երկրի անվանի մարդկանց համաստեղության մեջ։

Մատրոսովը նոր հնգամյակի ստախանովականներից է, հայրենասիրական նոր մեծ շարժման նախաձեռնողներից մեկը։ Մատրոսովը հմտորեն տիրապետել է իր պրոֆեսիային, որը և նրան հնարավորություն տվեց հասնելու բարձր արտադրողականության, միևնույն ժամանակ տնտեսելով զգալի քանակությամբ հումք։ 1946 թվականի ընթացքում նա կատարեց երկու և կես տարվա արտադրական նորմա, իսկ կոշիկի ձևման պրոցեսը կատարելագործելու հետ-

վանքով տնտեսեց մոտ 12 հազար քառակուսի դեցիմետր կաշի, որից լրացուցիչ կերպով պատրաստվեց ավելի քան 1.000 զույգ կոշիկ։

Մատրոսովը նաև հմուտ կազմակերպիչ է։ Իր աշխատանքային փորձը տարածելու նպատակով նա ստանձնեց ցեխի երիտասարդ բանվորներից կոմպլեկտավորված բրիգադայի ղեկավարությունը և նրանց սովորեցրեց աշխատանքի իր ստախանովյան մեթոդները։

Մատրոսովի բրիգադան ձևման ցեխի ամենաօրինակելի, իսկական ստախանովյան բրիգադան է, որը ծավալելով սոցիալիստական մրցությունը, միշտ եղել է առաջավոր, շարունակ կատարել է երկու—երկու և կես արտադրական նորմա։ Այդ հաջողությունների արդյունք են ամենից առաջ այն բանի, որ Մատրոսովն իր բրիգադայի բոլոր բանվորներին դարձրել է առաջավոր։ Նրա բրիգադայում չկա ետ մնացող, «միջին թվերի» ետևում թաքնվող ոչ մի բանվոր։

***

Այս տարվա փետրվարին «Պարիժսկայա Կոմունա» ֆաբրիկայի ձևման ցեխում տեղի ունեցավ արտադրական խորհրդակցություն,



որը քննության առավ սոցիալիստական մրցության ստանձնված պարտավորությունների կատարման հարցը։ Խորհրդակցությունը գտավ, որ եթե բոլոր բանվորները հասնեն առաջավորների մակարդակին, եթե բոլոր ցեխերը հավասարվեն առաջավորներին, ապա ֆաբրիկան ոչ միայն կկատարի, այլև կգերակատարի իր արտադրական պլանը։

Բայց ինչպե՞ս հասնել դրան։

Այդ մասին չափազանց հետաքրքիր ելույթ ունեցավ ձևող բանվոր Մատրոսովը։ Նա ասաց.

— Մեր ցեխում ստախանովական շատ ձևողներ օրական 2—3 նորմա են կատարում, բայց բանվորներ էլ կան, որոնք չեն կատարում իրենց նորման։ Ձևողներից մի քանիսը ժամանակի զգալի մասը անց են կացնում օժանդակ օպերացիաների վրա, իսկ իրենց իսկական աշխատանքով զբաղվում են օրական հազիվ 5—6 ժամ։ Վատ նորոգման պատճառով մեքենաները հաճախ շարքից դուրս են գալիս, ո՛չ բոլոր բանվորներն են ստախանովյան մեթոդներով աշխատում, անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվում առաջավորների փորձն արմա-

տավորելու համար, հումքի գերածախս է կատարվում։ Ես առաջարկում եմ սկսել աշխատանքի ստախանովյան մեթոդների արմատավորումը։ Այդ հնարավորություն կտա բոլոր ձևողներին հասցնել առաջավորների մակարդակին։ Աշխատանքի ստախանովյան մեթոդներն արմատավորելու համար անհրաժեշտ է կազմել ընդհանուր ցեխային պլան։ Այդ պլանում, մեր առաջավոր ձևվողների աշխատանքի փորձի ուսումնասիրության հիման վրա, պետք է հաշվի առնել, թե ի՞նչ է հարկավոր յուրաքանչյուր աշխատատեղում։ Կազմելով համացեխային պլան, աշխատանքի արտադրողականության բարձրացման նորանոր ռեզերվներ կհայտաբերվեն։

Մատրոսովի առաջարկը ջերմ պաշտպանություն գտավ ինչպես «Պարիժսկայա Կոմունա» կոշկեղենի ֆաբրիկայում, այնպես էլ ամբողջ Սովետական Միության մեջ։ Մատրոսովի աշխատանքային ընկերները ջերմորեն պաշտպանելով ստախանովյան մեթոդների արմատավորման նպատակով համացեխային պլան կազմելու մասին արված առաջարկը, իրենց սեփական փորձի հիման վրա է՛լ ավելի հիմնավորեցին այն



և որոշեցին անհատական ռեկորդներից անցնել համացեխային, համաֆաբրիկային բարձր արտադրողականության։

Ձևող բանվոր Մատրոսովը դարձավ Ստալինյան նոր հնգամյակի անվանի ստախանովական, նոր հրաշալի նախաձեռնության դրոշակակիրը։

Մատրոսովն իր աշխատանքի փորձով ապացուցեց, թե ինչպիսի վիթխարի ռեզերվներ կան մեր յուրաքանչյուր ձեռնարկությունում՝ Ստալինյան նոր հնգամյակի պլանները կատարելու և գերակատարելու համար։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման յուրաքանչյուր տոկոսը, հումքի խնայողաբար օգտագործման հետ միասին, լրացուցիչ կերպով երկրին կտա մեծ քանակությամբ արտադրանք։

Հաշիվները ցույց են տվել, որ կաշվեղենի մեկ տոկոս խնայողությունից միայն «Պարիժսկայա Կոմունա» ֆաբրիկան ընթացիկ տարում լրացուցիչ կերպով կտա 30 հազար զույգ կոշիկ։ Իսկ ձևողների աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեկ տոկոսով, լրացուցիչ կերպով կտա ևս 36 հազար զույգ կոշիկ։

Եթե ՍՍՌՄ կոշկեղենի արդյունաբերու-

թյան բանվորներն իրենց աշխատանքի ար-
տադրողականությունը բարձրացնեն մեկ
տոկոսով, ապա տարեկան լրացուցիչ կեր-
պով կարտադրվի մոտ մեկ միլիոն զույգ
կոշիկ։ Եթե կոշկեղենի արդյունաբե-
րության մեջ տնտեսվի կաշվեղենի մեկ
տոկոսը, ապա դրա հաշվին պլանից դուրս
կարտադրվի մոտ 400 հազար զույգ կոշիկ։
Այսպիսով, աշխատանքի արտադրողա-
կանության բարձրացումը մեկ տոկոսով և
հումքի ծախսման խնայողությունը մեկ տո-
կոսով ՍՍՌՄ կոշկեղենի արդյունաբերու-
թյան մեջ, մեր բնակչությանն այս տարի
լրացուցիչ կերպով կտա մեկ միլիոն 400
հազար զույգ կոշիկ։
Ջևող բանվոր Մատրոսովի հայրենասիրա-
կան նախաձեռնությունը ջերմ արձագանք է
գտել մեր հայրենիքի բոլոր անկյուններում։
Այն գործողության մեջ է մտել ոչ միայն
թեթև արդյունաբերության ձեռնարկություն-
ներում, այլ նաև մետալուրգիայի մեջ, եր-
կաթուղային տրանսպորտում, հանքահորե-
րում, երկրի բոլոր գործարաններում ու
ֆաբրիկաներում։ Ստեղծվել են ստախանո-
վյան մեթոդների արմատավորման, բանվոր-
ների ռացիոնալիզատորական առաջարկները



հավաքող հանձնաժողովներ։ «Պարիժսկայա
Կոմունա» ֆաբրիկայում միայն մեկ օրում
բանվորներից ստացվել է 200 ռացիոնալի-
զատորական առաջարկ։
Մատրոսովի հայրենասիրական նախա-
ձեռնությանն արձագանքեցին Սվերդլովսկի
ու Կիևի կոշկեղենի ֆաբրիկաների բանվոր-
ներն ու բանվորուհիները, Դոնբասի ածխա-
հատները, Դնեպրոպետրովսկի մետալուրգ-
ներն ու մանածագործները, Բաքվի նավթա-
գործները, արձագանքեցին Սովետական
Հայաստանի արդյունաբերական ձեռնար-
կությունների բանվորները, բանվորուհինե-
րը, ինժեներներն ու տեխնիկները։
Մեր ռեսպուբլիկայում Մատրոսովի նա-
խաձեռնությանն առաջինն արձագանքեց
Երևանի կոշկեղենի № 1 ֆաբրիկայի կոլեկ-
տիվը։ Փետրվարի 11-ին ֆաբրիկայի ձևող
ցեխում հրավիրվեց արտադրական խորհր-
դակցություն՝ նվիրված Մատրոսովի աշխա-
տանքային նոր մեթոդների կիրառմանը։
Խորհրդակցությունը լսեց ցեխի վարիչ ընկ.
Ա. Պողոսյանի զեկուցումը Մատրոսովի ա-
ռաջարկության մասին։ Այնուհետև հանդես
եկան ձևման ցեխի ստախանովականներ Ա.
Բարսեղյանը, Հ. Գրիգորյանը, ցեխի վար-

պետ Օ. Չեպիչյանը, արտասահմանից ներգաղթած ձևող վարպետ Փ. Նորաշխարհյանը և ուրիշներ։ Նրանք ջերմորեն պաշտպանեցին Մատրոսովի նախաձեռնությունը և որոշեցին այն կենսագործել իրենց ֆաբրիկայում։ Բանվորների առաջարկները հավաքելու և ամփոփելու համար ստեղծվեց համացեխային հանձնաժողով։

Ձևման ցեխի պլանն այժմ բաժանված է հինգ բաժնի։ Առաջավոր ձևող բանվորների աշխատանքային փորձի յուրացման բաժնում նախատեսվում է օգնել բոլոր բանվորներին՝ յուրացնելու առաջավորների փորձը։ Այդ նպատակով ցեխում գործում է ստախանովյան մեկ դպրոց, որը ղեկավարում է անվանի ստախանովական Ա. Պողոսյանը։ Ուշագրավ է նաև մյուս բաժինների աշխատանքը։ Դրանք են՝ արտադրության և աշխատանքի կազմակերպման, տեխնոլոգիայի և նյութերի օգտագործման, արտադրանքի որակի հարցերով զբաղվող և աշխատանքի տեղը կազմակերպող բաժինները, որոնցից յուրաքանչյուրն իր գծով լայն աշխատանք է ծավալել ցեխում։

Առաջավորների փորձի արմատավորումը հիանալի արդյունքներ տվեց։ Մինչ այդ



իրենց արտադրական նորմաները թերակատարող բանվորներ Տ. Եսայանը, Հ. Թերմիջյանը, Կ. Բղիկյանն այժմ ոչ միայն կատարում, այլև գերակատարում են իրենց ամենօրյա նորմաները։ Միայն ձևման ցեխում բանվորների աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է ավելի քան 10 տոկոսով։

Մատրոսովի հայրենասիրական առաջարկներն արմատավորելու շնորհիվ ֆաբրիկան փետրվար ամսվա արտադրական պլանը կատարեց ժամկետից վեց օր շուտ, և լրացուցիչ կերպով երկրին տվեց 5.400 զույգ կոշիկ։

Նույն ժամանակամիջոցում ֆաբրիկան 9.785 քառակուսի դեցիմետր փափուկ կաշվի խնայողություն կատարեց, որով կարելի է արտադրել ևս 653 զույգ կոշիկ, առանց լրացուցիչ հումքի օգտագործման։ Կաշվի մակերեսի հմուտ և ռացիոնալ օգտագործման շնորհիվ ձևող բանվորներ Ս. Ռոմելյանը, Ա. Բարսեղյանը, Ա. Հակոբյանը, Հ. Մանուկյանը 22 օրում տնտեսեցին յուրաքանչյուրը 850—1000 քառակուսի դեցիմետր կաշի։

Մատրոսովի նախաձեռնությունը ջերմ արձագանք է գտել նաև Լենինականի կոշկե-

ղենի ֆաբրիկայի, Տեքստիլ կոմբինատի, Երևանի կոշկեղենի № 3, Կարի № 1 ֆաբրիկաների, տրանսֆորմատորային գործարանի, Ալավերդու քիմիական գործարանի և այլ արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներում:

Երևանի Կլարա Ցետկինի անվան կարի ֆաբրիկայում, ծավալելով սոցիալիստական մրցությունը, բոլոր ցեխերն ու ագրեգատները հավասարվել են առաջավորներին: Հետ մնացող բանվորներին օգնություն է կազմակերպում անվանի ստախանովական, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Շուշիկ Բաղդասարյանը: Նա շարունակ կատարում է օրական երկու և ավելի արտադրական նորմա, իր փորձը հաղորդելով ֆաբրիկայի մյուս աշխատողներին:

Ռեսպուբլիկայի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունների, երկաթուղային տրանսպորտի և հանքահորերի բանվորները, բանվորուհիները, ինժեներներն ու տեխնիկները, արձագանքելով լենինգրադցիների կոչին՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակը նորանոր նվաճումներով նշանավորելու մասին, արմատավորում են առաջավորների փորձը,



պայքարում են Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ, մինչև Հոկտեմբերյան տարեդարձը կատարելու և գերակատարելու համար:

Մատրոսովի հայրենասիրական նախաձեռնությունը մի ժամանակավոր կամպանիա չէ: Այն նախապայմաններ է ստեղծում մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնումն ու զարգացումն արագացնելու, Ստալինյան նոր հնգամյակի հոյակապ ծրագիրը հաջողությամբ կենսագործելու համար: Ուստի Մատրոսովի փորձը պետք է հասցնել բոլոր բանվորների գիտակցությանը, որպեսզի նրանք ձգտեն հավասարվել առաջավորների մակարդակին, ընդհանուր վերելք ստեղծելու համար:

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

---

## ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՏԱԼԻՆԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*...Պրոլետարիատը ներկայացնում և իրականացնում է աշխատանքի հասարակական կազմակերպության ավելի բարձր տիպը՝ կապիտալիզմի համեմատությամբ։ Այդ է էությունը։ Այդ է ուժի աղբյուրը և կոմունիզմի անխուսափելի լիակատար հաղթանակի գրավականը։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*Մի՞թե պարզ չէ, որ ստախանովականները նորարարներ են մեր արդյունաբերության մեջ, որ ստախանովյան շարժումը մեր ինդուստրիայի ապագան է, որ նա պարունա-*



*կում է բանվոր դասակարգի ապագա կուլտուրական-տեխնիկական վերելքի սերմը, որ նա բաց է անում մեր առաջ այն ուղին, որով միայն կարելի է հասնել աշխատանքի արտադրողականության այն բարձրագույն ցուցանիշներին, որոնք անհրաժեշտ են սոցիալիզմից կոմունիզմին անցնելու և մտավոր աշխատանքի ու ֆիզիկական աշխատանքի հակադրությունը ոչնչացնելու համար։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

*Առանց աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ աճման ինչպես արդյունաբերության բնագավառում, այնպես և գյուղատնտեսության բնագավառում՝ մենք չենք կարող լուծել վերակառուցման խնդիրները, չենք կարող ո՛չ միայն հասնել ու անցնել կապիտալիստական առաջավոր երկրներից, այլ նույնիսկ չենք կարող պաշտպանել մեր ինքնուրույն գոյությունը։ Այդ պատճառով՝ աշխատանքի արտադրողականության աճման պրոբլեմը մեզ համար առաջնակարգ նշանակություն ունի։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

# ԻՆՉՊԵ՞Ս ԱՊԱՀՈՎԵԼ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԸ

«Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը հանդիսանում է գյուղատնտեսության հետագա հզոր վերելքի մի հոյակապ ծրագիր, որի իրագործումը հնարավորություն կտա կարճ ժամանակամիջոցում ստեղծել երկրում պարենային մթերքների առատություն, զարգացող թեթև արդյունաբերությունն ապահովել հումքով և ստեղծել անհրաժեշտ պետական պարենային ու հումքային ռեզերվներ։

Պլենումի որոշումների լույսի տակ առավել կարևոր նշանակություն է ստանում հացահատիկային տնտեսության հետագա հզոր վերելքը, որը մոտակա երեք տարվա ընթացքում պետք է իր համախառն արտադրանքով հասնի նախապատերազմյան մակարդակին, այն հաշվով, որ հնգամյակի վերջում գերազանցի նախապատերազմյան չափերին։ Հացահատիկի համախառն բերքի այդպիսի աճը



պետք է տեղի ունենա ցանքատարածությունների ընդարձակման և որ հիմնականն է՝ բերքատվության բարձրացման միջոցով։

Հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում բարձր բերքի վարպետների ուսանելի փորձը և գիտահետազոտական հիմնարկների նվաճումները ցույց են տալիս, թե ինչպիսի անսպառ և դեռ չօգտագործված հնարավորություններ կան բերքատվության բարձրացման համար։

Թալինի շրջանի Ջիթհանքով գյուղի Բուդյոննու անվան կոլխոզի օղակավարուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանի հիանալի օրինակը, որը 1946 թվականին 10 հեկտար անջրդի հողամասի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 39,5 ցենտներ աշնանացան ցորենի միջին բերք, նույն կոլխոզի օղակավարուհի, Լենինի շքանշանակիր Օֆիկ Մադոյանի օրինակը, որը նույնքան տարածությունից ստացավ հեկտարից 38 ցենտներ միջին բերք, Կոտայքի շրջանի Պտղնի գյուղի Պուշկինի անվան կոլխոզի օղակավար, Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանակիր Անդրանիկ Սարգսյանի օրինակը, որը 15 հեկտար ջրովի հողամասի յուրաքանչյուր հեկտարից

ստացավ 22,3 ցենտներ ցորենի միջին բերք և այլ առաջավոր կոլխոզնիկների ինչպես նախապատերազմյան, այնպես և հետպատերազմյան ժամանակաշրջանում ձեռք բերած նվաճումներն այս բանի պայծառ վկայությունն են։

Բերքատվության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի ագրոձեռնարկումների կոմպլեքսի լրիվ, ժամանակին և ճիշտ կիրառումը։

Որո՞նք են այդ ձեռնարկումներից կարևորագույնները։

**Հողի նախացանքային մշակությունը։** Բերքատվության բարձրացման հիմնական գործոններից մեկը հողի նախացանքային բարձրորակ մշակությունն է։ Աշնանացանի համար՝ մաքուր ցելը (սև կամ վաղ), իսկ գարնանացանի համար՝ ցրտահերկը, հացահատիկային կուլտուրաների նկատմամբ կիրառվող ագրոձեռնարկումների կոմպլեքսում բացառիկ նշանակություն ունեն։ Այդ միջոցառումների շնորհիվ հիմնականում լուծվում է հողի մեջ բույսերի համար մատչելի սննդանյութերի, խոնավության կուտակման ու պահպանման կարևոր խնդիրը և մոլախոտերի դեմ մղվող պայքարը։



Հայտնի է, որ վաղ ցելը հացահատիկային կուլտուրաների բերքը բարձրացնում է մոտ 20-25 տոկոսով, իսկ սև ցելը՝ 30-40 տոկոսով։ Ցելերի էֆեկտիվությունն առանձնապես աչքի է ընկնում երաշտի տարիներին, երբ ցելադաշտի մշակման հետևանքով հողի մեջ կուտակված խոնավությունը երկար ժամանակ ցանքերը պահպանում է երաշտից։ Այս բանը լավ հայտնի է բարձր բերքի վարպետներին, որոնք կիրառելով վաղ կամ սև ցելերը ռեկորդային բերք են ստանում։

Մեծ է լինում ցելի էֆեկտը, երբ այն համապատասխանորեն լավ է մշակվում։ Անհրաժեշտ է ամբողջ ամռան ընթացքում ցելը պահել փուխր և մոլախոտերից զերծ վիճակում, որպեսզի պահպանվեն հողի մեջ կուտակված անհրաժեշտ սննդանյութերն ու խոնավությունը աշնանացանի համար։ Դրան կարելի է հասնել ամռան ընթացքում ցել արած հողամասում 3-4 անգամ կուլտիվացիա կատարելու և փոցխելու միջոցով (հողի երեսը կեղևակալելու և մոլախոտեր երևան գալու դեպքում)։

Այս եղանակով մշակված ցելի մեջ կուտակվում է խոնավության այնպիսի պաշար, որ ցանվող աշնանացանը, անկախ աշնանը

տեղացող անձրևներից, ծլում է, արմատակալում և նորմալ կերպով թփակալում մինչև ցրտերն սկսելը։

Գարնանացանի համար աշնանը կատարված ցրտահերկը կուտակելով հողի մեջ ձմռան տեղումների խոնավությունը, նույնպես նպաստավոր պայմաններ է ստեղծում գարնանը ցանվող հացահատիկի ծլելու համար՝ անկախ գարնանային տեղումներից։ Ցրտահերկի մեջ ձմռան տեղումների խոնավությունը պահպանելու համար վճռական նշանակություն ունի ցրտահերկի վաղ գարնան փոցխումը, որի շնորհիվ զգալի չափով կրճատվում է խոնավության անտեղի գոլորշիացումը հողից։

Մեր ռեսպուբլիկայի նախալեռնային և լեռնային շրջանների համար մաքուր ցելերի և ցրտահերկի օգտագործումը վճռական նշանակություն ունեն բերքատվության բարձրացման գործում։

Մաքուր ցելերը և ցրտահերկը, կարգավորելով հողի խոնավության ռեժիմը, հնարավորություն են ստեղծում հացահատիկային կուլտուրաների ցանքը կատարել լավագույն ժամկետում՝ կախում չունենալով մթնոլորտային տեղումներից։



**Ցանքի ժամանակը**։ Գարնանացանի ճիշտ ժամկետի ընտրությունը խոշոր նշանակություն ունի բարձր բերք ստանալու համար։

Սերմերի բարեհաջող ծլման և նրանց հետագա աճման համար հողի անհրաժեշտ խոնավությունը ցրտահերկի մեջ պահպանվում է միայն գարնան ընթացքում։ Հողի խոնավության ուժեղացող գոլորշիացումը, երբեմն գարնանային երաշտը, պահանջում են բոլոր սորտերի ցանքը կատարել վաղ և ամենասեղմ ժամկետում, հողի քեշի ժամանակ, այն հաշվով, որ բույսերը ցրտահերկի մեջ կուտակված խոնավությունն օգտագործելով կարողանան ժամանակին արմատակալել, լավ թփակալել և նախապատրաստվել անցնելու իրենց զարգացման հետագա ավելի քիչ բարենպաստ շրջանը։

Գիտահետազոտական հիմնարկների տվյալները ցույց են տալիս, որ վաղ ժամկետում կատարված գարնանացանի բերքը մոտ 20—22 տոկոսով ավելի բարձր է լինում, քան ժամկետից տասն օր ուշ կատարված գարնանացանի բերքը։ Այս հանգամանքը պահանջում է գարնան ցանքը կատարել վաղ և կարճ ժամկետում ու չձգձգել այն։

**Սերմացուի նախապատրաստումը ցանքի**

**համար:** Լավ զտված, խոշոր և առողջ սերմացուից ստացվում է առատ ու բարձրորակ բերք։ Բարձրորակ սերմացուից ծլած բույսերն ավելի դիմացկուն են հիվանդությունների և վնասատուների նկատմամբ և հեշտ են տանում կլիմայական անբարենպաստ պայմանները (սառնամանիք, երաշտ և այլն)։

Բարձրորակ սերմացուն լավացնում է այդ բույսերից ստացվող սերնդի ժառանգական հատկությունները։

Սերմացուն պետք է լինի միանգամայն մաքուր և ունենա բարձր ծլունակություն։ Դրան կարելի է հասնել սերմացուն սերմազտիչ մեքենայով 1-2 անգամ զտելու միջոցով։ Առաջավոր կոլխոզնիկները դրանից բացի, կատարում են նաև սերմացուի հատընտիր զտում։

Սերմացուն ցանքից առաջ անհրաժեշտ է ախտահանել ֆորմալինով կամ «Ա-Բ» պրեպարատով՝ բույսերը մրիկ և այլ հիվանդությունից զերծ պահելու համար։

**Ցանքի խնամքը:** Գարնանը հացահատիկային կուլտուրաների խնամքի հիմնական միջոցառումներն են՝ ցանքի վաղ գարնանային փոցխումն ու քաղհանը։

Աշնանացանի փոցխումը կատարվում է



վաղ գարնանը՝ հողի վերին շերտի հասունության (քեշի եկած) ժամանակ։ Դա շատ կարևոր միջոցառում է հողի մեջ կուտակված խոնավությունը պահպանելու և հողի օդափոխությունը կարգավորելու տեսակետից, որոնք շատ կարևոր են զարգացող բույսերի արմատների նորմալ աճման համար։ Փոցխումը պետք է կատարել շարքերին հակառակ, կամ շեղ ուղղությամբ՝ մի նվագ, եթե աշնանացանը թույլ է զարգացած և երկու նվագ՝ եթե ուժեղ թփակալած ու զարգացած է։

Ինչ վերաբերում է գարնանացան հացահատիկների փոցխմանը, ապա անհրաժեշտ է նշել, որ այդ ձեռնարկումը վերջին տարիներին նույնպես լայն կիրառվում է բարձր բերքի վարպետների կողմից և որի վարպետորեն օգտագործումը զգալիորեն նպաստում է բերքատվության բարձրացմանը։

Գարնանացանի փոցխումը հետապնդում է նույն նպատակները, ինչ որ աշնանացանի փոցխումը և կատարվում է բույսերի թփակալումից անմիջապես առաջ, անպայման հողի վերին շերտի հասուն վիճակում։

Հացահատիկային կուլտուրաների խնամքի կարևորագույն միջոցառումներից է քաղհա-

նը, որը պետք է կատարվի վեգետացիայի ընթացքում 1—3 անգամ, նայած մոլախոտերի զարգացմանը։

Պարարտացումը: *Բերքատվության բարձրացման համար հացահատիկային կուլտուրաների ագրոձեռնարկումների կոմպլեքսում վճռական նշանակություն ունի հողի պարարտացումն ու բույսերի սնուցումը վեգետացիայի ընթացքում։ Կիրառելով ագրոտեխնիկան, գյուղատնտեսության առաջավորները միշտ էլ այն զուգակցում են մեծ քանակությամբ պարարտանյութերի օգտագործման հետ։ Դժվար թե հնարավոր լինի հիշատակել մի որևէ բարձր բերք, որն ստացված լինի առանց պարարտանյութերի լայն օգտագործման։*

*Պարարտանյութերի ազդեցությունը հողում արտահայտվում է երկու կերպ՝ նախ նրանք ավելացնում են հողի մեջ բույսերի սննդառության համար անհրաժեշտ ու նրանց կողմից հեշտ յուրացվող սննդանյութերը (ազոտ, ֆոսֆոր, կալի և այլն) և երկրորդ՝ լավացնում են բույսերի համար օգտակար հողի հատկությունները (կնձիկային կազմություն, ջրունակություն, օդաթափանցկենություն և այլն)։ Հողի հատկությունները լա-*



*վացնելու համար առանձնապես խոշոր նշանակություն ունի օրգանական պարարտանյութերի օգտագործումը՝ գոմաղբ, խառն աղբ, տորֆ, որոնք իրենց մեջ միաժամանակ պարունակում են բույսերի սննդառության համար պահանջվող բոլոր սննդանյութերը։*

*Բարձր բերքի վարպետներ՝ Մարիամ Մարտիրոսյանը, Օֆիկ Մադոյանը, Վանո Ղարիբյանը, Անդրանիկ Սարգսյանը և ուրիշներն օգտագործում են տեղական պարարտանյութերը՝ գոմաղբ և մոխիր, թե՛ հողի հիմնական պարարտացման և թե՛ բույսերի սնուցման համար։ Հիմնական պարարտացման ժամանակ օգտագործում են 20-30 տոննա գոմաղբ մեկ հեկտարին, որից հետո վարում են հողամասը, իսկ սնուցման համար վաղ գարնանը, աշնանացանի փոցխումից անմիջապես առաջ, պարարտացնում են խառնած վիճակում 8—10 տոննա մոխրով ու լավ փտած գոմաղբով։ Առաջավոր կոլխոզնիկները սնուցման համար օգտագործում են նաև գոմաղբի հեղուկը, որը ցողում են դաշտերի վրա։ Այդպիսի սնուցում կատարվում է հաճախ ցանքի այն մասերի վրա, որտեղ բույսերի զարգացումը հետ է մնում։*

Հացահատիկային կուլտուրաների պարարտացումն ու սնուցումն էֆեկտավոր ձեռնարկում է։ Գիտահետազոտական հիմնարկների բազմաթիվ փորձերից երևում է, որ պարարտանյութերի ճիշտ օգտագործումը բարձրացնում է բերքատվությունը մոտ 40—60 տոկոսով, այդ իսկ պատճառով պարարտացումը լայն կիրառում պետք է գտնի կոլխոզային պրակտիկայում։

Ոռոգումը: Հացաբույսերի ոռոգումը մի հզոր զենք է բարձր և կայուն բերք ստանալու համար։ Ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսը կիրառելու դեպքում ոռոգման էֆեկտն է՛լ ավելի է բարձրանում։ Այդ պատճառով ջրովի հողերում կիրառվող ագրոձեռնարկումների սիստեմը պետք է սերտորեն զուգակցվի ոռոգման հետ։ Պարարտացումն ուժեղացնելու դեպքում բարձրանում է բույսերի պահանջը ջրի նկատմամբ, ուստի որքան շատ պարարտանյութ է մտցվում հողի մեջ, այնքան մեծանում է բույսերի ջրի պահանջը։ Ջրովի հողերում բույսերի սնուցումը պետք է շաղկապել ջրման հետ։ Դաշտը ջրել բույսերի սնուցման համար պարարտանյութ տալուց հետո, որպեսզի սննդանյութերը լուծվեն, ծծվեն հողի մեջ



և հասնեն բույսերի արմատներին։ Հացաբույսերի ջրի պահանջը հատկապես մեծ է թփակալման և հատիկի լիցքի (դանավ) ժամանակ։ Այդ շրջանում բույսերի ջրի պահանջը բավարարելը մեծ չափով նպաստում է բերքատվության բարձրացմանը։

Բարձր բերքի վարպետները ջրման անհրաժեշտությունը որոշում են ելնելով բույսերի վիճակից և ջրումը կատարում են ըստ բույսերի պահանջի։

***

Բերքատվության բարձրացման կարևորագույն հարցերից է կիրառվող ագրոձեռնարկումների բարձրորակ կատարումը։ Յուրաքանչյուր ագրոձեռնարկման էֆեկտիվությունը կարող է խիստ ընկնել, եթե նա կատարվում է անժամանակ կամ անորակ։ Այդ իսկ պատճառով առաջավոր կոլխոզնիկները բացառիկ նշանակություն են տալիս կիրառվող ագրոձեռնարկումների որակին, ընտրելով նրանց կատարման ամենալավ ժամկետը։

Հ. ՍՄԲԱՏՅԱՆ

Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

---

## ՀԱՄԱՄԼԻԻ ՇԱՔԱՐԻ ԳՈՐԾԱՐԱՆԸ

«Ավարտել շաքարի գործարանի կառուցումը...» —գրված է ՍՍՌ Միության նոր հընգամյա պլանում։

Ստալինյան նոր հնգամյակի խոշոր նորակառույցը՝ Համամլիի շաքարի գործարանն արդեն գործում է մեր Ռեսպուբլիկայում։ Գործարկվեց ՍՍՌՄ նոր հնգամյա պլանով նախատեսված վերականգնվող և կառուցվող 5.900 արդյունաբերական ձեռնարկություններից մեկը ևս։

1950 թվականին շաքարի գործարանն արտադրելու է 6.500 տոննա շաքար։ Առաջին տարում գործարանն ամեն օր վերամշակելու է 4.200 ցենտներ շաքարի ճակնդեղ, արտադրելով 50 տոննա շաքար, իսկ գործարկման երկրորդ տարուց սկսած օրական մշակելու է 7.500 ցենտներ ճակնդեղ և տալու է 90 տոննա շաքար։ Մինչև այս տարվա վերջը գործարանն արտադրելու է 4.000 տոննա շաքար։



Այնտեղ, ուր այժմ կառուցված է Համամլիի շաքարի գործարանը, դեռ մի քանի տարի առաջ ամայի դաշտ էր, իսկ այժմ՝ գեղեցիկ, վարդագույն տուֆից կառուցված շաքարի գործարանն է իր ագրեգատներով։ Գործարանին կից կառուցվելու է նաև ըսպիրտի ագրեգատ, ինչպես նաև ճակնդեղի մնացուկների չորացման ագրեգատ, որն անասնապահությանը տալու է բարձրորակ խտացրած կեր։

Գործարանի շրջակայքում բանվորների համար կառուցված են և դեռ շարունակում են կառուցվել երկհարկանի տներ։ Կառուցված տները գեղեցիկ են, մաքուր և լուսավոր։ 1947 թվականի ընթացքում կառուցվելու են 20 բնակարան-առանձնատներ։ Մինչև հունիս պատրաստ կլինեն ճաշարանի և ակումբի նորակառույց հիմնական գեղեցիկ շենքերը։

Գործարանի կառուցողների շարքերում կան նշանավոր ստախանովականներ։ Փականագործ Իլյա Ալեյնիկը, զոդողներ՝ Նիկոլայ Շպուրիկը, Անդրանիկ Դարբինյանը և ուրիշները յուրաքանչյուր ամիս պլանները կատարում էին 200—225 տոկոսով։

Կազմակերպված հատուկ դասընթացում

որակավորվել են երիտասարդ շինարարները։ Գործարանին կից գործում է նաև ֆաբգործուս, որը պատրաստում է շաքարի արտադրության մասնագետներ։ Սովորողների մեծ մասը եղել են պրակտիկայի եղբայրական Վրաստանի Աջարիի շաքարի գործարանում։

Ուշագրավ է այն հանգամանքը, որ գործարանի կառուցմանը զուգընթաց պատրաստվել են բավականին թվով նոր կադրեր, որոնց 60 տոկոսից ավելին տեղացիներ են։

Շաքարի գործարանի գործարկումով լայն հեռանկար է բացվում ճակնդեղացան շրջանների կոլխոզների համար, որոնք ոչ միայն պետք է ընդարձակեն շաքարի ճակնդեղի ցանքերի տարածությունը, այլև ստանան բարձր բերք։

Համամլիի շաքարի գործարանի գործարկումը խոշոր նշանակություն ունի Ռեսպուբլիկայի ժողտնտեսության համար։ Այն նպաստելու է Ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության հետագա է՛լ ավելի զարգացման և բնակչության մատակարարման համար։

Ի. ԽԱՉԱՏՐՅԱՆ

---

## ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

### ԱՊՐԻԼ

1945 թ. ապրիլի 11.— *Բարեկամության, փոխադարձ օգնության և հետպատերազմյան համագործակցության պայմանագրի ստորագրումը Սովետական Միության և Հարավսլավիայի միջև։*

1945 թ. ապրիլի 13.— *Սովետական Բանակի զորամասերը գրավեցին Ավստրիայի մայրաքաղաք Վիեննան։*

1934 թ. ապրիլի 16.— *Սահմանվեց Սովետական Միության Հերոսի կոչումը։*

1923 թ. ապրիլի 17.— *ՌԿ(բ)Պ XII համագումարի բացումը։*

1945 թ. ապրիլի 21.— *Բարեկամության, փոխադարձ օգնության և հետպատերազմյան համագործակցության պայմանագրի ստորագրումը Սովետական Միության և Լեհական Ռեսպուբլիկայի միջև։*

1870 թ. ապրիլի 22.— *Ծնվեց Վլադիմիր Իլյիչ Լենինը։*

1906 թ. ապրիլի 23.— *ՌՍԴԲՊ IV (միավորիչ) համագումարի բացումը։*

1945 թ. ապրիլի 23.— *Սովետական Բանակի զորամասերը մարտերով մտան Գերմանիայի մայրաքաղաք Բեռլին։*





1906 թ. ապրիլի 23.— ՌՍԴԲԿ IV համագումարի բացումը։

1945 թ. ապրիլի 27.— Գերագույն Գլխավոր Հրամանատար Ի. Վ. Ստալինի դիմումը ողջույնով Սովետական Բանակին և դաշնակիցների զորքերին։

1920 թ. ապրիլի 28.— Կազմակերպվեց Ադրբեջանական ՍՍՌ, 1936 թվականից՝ Միութենական ՍՍՌ։

1929 թ. ապրիլի 29.— ՀամԿ(բ)Պ XVI կոնֆերանսի դիմումը բանվորներին և աշխատավոր գյուղացիներին՝ սոցիալիստական մրցություն ծավալելու մասին։

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 01376, պատվեր 490, տիրաժ 9800
Ստորագրված է տպագրության 7/IV 1947 թ.
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ. վարչության № 2 տպարան, Երևան.

Отдел пропаганды и агитации ЦК КП(б) Армении
Блокнот Агитатора
№ 9